Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ



№ 5 ՓԵՏՐՎԱՐ 1957

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Տպագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ։ Հեռախոս՝ 2—52—78։





# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ 1957 ԹՎԱԿԱՆԻ ԲՅՈՒՋԵՆ

Կ. ՋԱՐԱՅՅԱՆ
Հայկական ՍՍՌ Ֆինանսների մինիստրի տեղակալ

1957 թվականի փետրվարի 9-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետի վեցերորդ սեսիան քննարկեց և հաստատեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից ներկայացված 1957 թվականի ՍՍՌՄ-ի Պետական բյուջեի մասին օրենքը, որը ցայտուն կերպով արտահայտում է սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի աճող հզորությունը, ժողովրդի նյութական բարեկեցության բարձրացումը։

Տնտեսական զարգացումը և կուլտուրական շինարարությունը այս տարի մեր երկրում իրականացվում է պարտիայի XX համագումարի և ՍՄԿՊ Կենտկոմի Դեկտեմբերյան պլենումի որոշումների կենսագործման նշանաբանի տակ։ Դա ապահովվում է անհրաժեշտ դրամական միջոցներով, որոնք





նախատեսված են նոր ընդունված Պետական բյուջեի մասին օրենքով։

ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը այս տարի ավելանում է 8 տոկոսով։ Ազգային եկամտի աճը հնարավորություն կտա աշխատավորների անձնական եկամուտների զգալի բարձրացման հետ միասին ավելացնել Պետական բյուջեի միջոցները և դրանք ի սպաս դնել արտադրության հետագա զարգացման, բնակչության ձրի կրթության, բուժօգնության և այլ կարիքների սպասարկմանը։

ՍՍՌՄ-ի 1957 թվականի Պետական բյուջեն հաստատված է եկամուտների գծով՝ 617 միլիարդ 155 միլիոն 967 հազար ռուբլի գումարով և ծախսերի գծով՝ 604 միլիարդ 580 միլիոն 653 հազար ռուբլի գումարով՝ ծախսերի նկատմամբ եկամուտների 12 միլիարդ 575 միլիոն 314 հազար ռուբլու գումարի գերազանցումով։

Անցյալ տարվա համեմատությամբ բյուջեի եկամուտները կավելանան մոտ 34 միլիարդ 400 միլիոն ռուբլով և ծախսերը՝ 43 միլիարդ 800 միլիոն ռուբլով։

Միութենական ռեսպուբլիկաների պետական բյուջեն սահմանված է 194 միլիարդ ռուբլի ընդհանուր գումարով։ Միութենական ռեսպուբլիկաների բյուջեների ծավալը



ավելանում է 11,7 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 2 անգամ։

Վերջին տարիներս ՍՄԿՊ Կենտկոմը և ՍՍՌՄ կառավարությունը իրականացրին մի շարք կարևորագույն միջոցառումներ, որոնք նպատակ ունեին ժողովրդական տնտեսության ղեկավարման գործում բարձրացնել միութենական ռեսպուբլիկաների դերը և վերացնել չափից ավելի կենտրոնացվածությունը։ Այդ միջոցառումներին են վերաբերում առաջին հերթին միութենական ռեսպուբլիկաների տնտեսության պետական պլանավորման և ֆինանսավորման կարգի փոփոխումը, մեծ քանակով արդյունաբերական, շինարարական, տրանսպորտային, գյուղատնտեսական, առևտրական և այլ ձեռնարկությունների ու տնտեսական կազմակերպությունների հանձնումը միութենական ռեսպուբլիկաների տնօրինությանը։

Իրականացված այդ միջոցառումները իրենց վառ արտահայտությունը գտան միութենական ռեսպուբլիկաների բյուջեներում։ Ներկայումս մշակվում են առաջարկություններ պլանավորման և ֆինանսավորման բնագավառում ավելորդ կենտրոնացվածությունը վերացնելու մասին, որի կապակցությամբ էլ նախապատրաստվում է միութենական ռեսպուբլիկաների բյուջետային ի-

բավունքների մասին նոր օրենքի նախագիծը։

Պարտիայի և կառավարության կողմից անցկացվող այս միջոցառումների նպատակըն է՝ զգալիորեն ընդլայնել միութենական ռեսպուբլիկաների Մինիստրների Սովետների կողմից լուծվող հարցերի շրջանակը՝ տնտեսական-կուլտուրական շինարարության և ֆինանսների բնագավառում։

Ի տարբերություն կապիտալիստական երկրների, որտեղ պետական բյուջեի հիմնական եկամուտները գոյանում են գլխավորապես բնակչությունից գանձվող հարկերից, մեր Պետական բյուջեն իր գերակշիռ մասով կազմվում է սոցիալիստական տնտեսության կուտակումներից (բյուջեի եկամուտների ամբողջ գումարի 85 տոկոսը)։

Բնակչությունից գանձվող հարկերի տեսակարար կշիռը այս տարի շատ ավելի ցածր է անցյալ տարվանից։ Հարկերի գումարը 1,5 միլիարդ ռուբլով պակասում է այն կապակցությամբ, որ 1957 թվականի հունվարի մեկից հարկումից ազատվում են ցածր վարձատրվող բանվորները և ծառայողները։

Այս տարի բաց թողնվող պետական փոխառությունը, անցյալ տարվա համեմատությամբ, կպակասի մեկ քառորդով, կամ 6,2



—

միլիարդ ռուբլով, իսկ պետական փոխառությամբ բնակչությանը կատարվող վճարումները սահմանված են 15 միլիարդ 400 միլիոն ռուբլի գումարով, կամ մեկ և կես միլիարդով ավելի, քան անցյալ տարի։

Բյուջետային միջոցների հիմնական մասը հատկացվում է ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության ֆինանսավորմանը, երկրի արտադրողական ուժերի զարգացմանը և բնակչության նյութական և կուլտուրական պահանջմունքների բավարարմանը։ Բյուջեով ժողովրդական տնտեսության համար նախատեսված է 244 միլիարդ 700 միլիոն ռուբլի, բացի դրանից, կօգտագործվեն նաև ձեռնարկությունների և տնտեսական կազմակերպությունների սեփական միջոցները 131 միլիարդ 600 միլիոն ռուբլի գումարով։

Այսպիսով, ժողովրդական տնտեսության համար կատարվող ծախսերի ընդհանուր ծավալը կկազմի 376 միլիարդ 200 միլիոն ռուբլի, կամ 7,5 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։

1957 թվականի բյուջեի մեջ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ռեզերվային ֆոնդը նախատեսված է 14 միլիարդ ռուբլու չափով։ Արդյունաբերության բոլոր ճյուղերի զարգացման վրա կատարվող ծախսերի ընդ-

հանուր գումարը կկազմի 201 միլիարդ 400 միլիոն ռուբլի։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հետևողականորեն անց են կացնում ծանր ինդուստրիայի առավել զարգացման գիծ, որովհետև միայն ծանր ինդուստրիայի բազայի վրա կարելի է հաջող կերպով իրականացնել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի, այդ թվում նաև սպառման առարկաների արտադրության արագ վերելքը։ Ելնելով այդ գլխավոր խնդրից, բյուջեի նշանակալից մասը հատկացվում է մետալուրգիական և վառելանյութային, անտառային և քիմիական, էներգետիկայի, շինանյութերի արդյունաբերության զարգացմանը։ Խոշոր միջոցներ են առանձնացվում թեթև և սննդի արդյունաբերության զարգացման համար։

Անցյալ տարի լավ աշխատեցին գյուղատնտեսության աշխատողները։ Միլիոնավոր հեկտարներով խամ և խոպան հողերի հաջող յուրացումը և բերքատվության բարձրացումը 1956 թվականին երկրին տվեցին հացահատիկի և մյուս կուլտուրաների չըտեսնված բերք։ Պետությունը մթերեց ավելի քան 3 միլիարդ 300 միլիոն փութ հացահատիկ, կամ մոտ 1,5 անգամ ավելի, քան ամենաբերքատու տարիներին։ Հավաքված



է շատ բամբակ և մյուս տեխնիկական կուլտուրաներ, ինչպես նաև կարտոֆիլ։ Զգալի հաջողություններ կան անասնաբուծության զարգացման գործում. ավելացել է կաթնատվությունը, միսը, յուղը։ Գյուղատնտեսության հետագա զարգացման համար, 1957 թվականին, առանձնացվում է 61 միլիարդ 600 միլիոն ռուբլի, այդ թվում 52 միլիարդ 900 միլիոն ռուբլի բյուջեից։ Բացի դրանից, կոլտնտեսությունները իրենց սեփական գումարներից կապիտալ շինարարության և հիմնական ֆոնդերի աճման վրա կծախսեն 21 միլիարդ ռուբլի և այդ նպատակի համար Գյուղբանկից կստանան 4 միլիարդ 900 միլիոն ռուբլի գումարով վարկ։

Մեր երկրում մեծ մասշտաբներով կատարվում է կապիտալ շինարարություն, այդ նպատակի համար, ինչպես նաև շրջանառու միջոցների աճման համար հատկացվում է 178,6 միլիարդ ռուբլի։

Պարտիան և կառավարությունը հատուկ հոգատարությունը են ցուցաբերում աշխատավորների կյանքի բարեկեցության և կուլտուրական մակարդակի բարձրացման նկատմամբ։ Ժողովրդի մասին այդ հոգատարությունը իր արտահայտությունն է գտնում ժողովրդա-տնտեսական պլանի և Պետական բյուջեի մեջ։ Կենսաթոշակների մասին նոր

*օրենքի կենսագործման, ցածր վարձատրվող բանվորների և ծառայողների աշխատավարձի բարձրացման, նախահանգստյան և նախատոնական օրերին աշխատանքային օրվա կրճատման, ածխային արդյունաբերության մեջ աշխատավարձի կարգավորման, գյուղատնտեսական մի քանի մթերքների մթերման և գնման գների բարձրացման, միջնակարգ և բարձրագույն ուսումնական հաստատություններում ուսման վարձը լրիվ վերացնելու, հղիության և ծննդաբերության արձակուրդների ավելացման հետ կապված ծախսերը քաղաքի և գյուղի բնակչության համար լրացուցիչ կերպով ապահովում են տարեկան 35 միլիարդ ռուբլու եկամուտ։*

*1957 թվականին զգալի միջոցներ են առանձնացվում սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար, այդ ծախսերը 1956 թվականի դիմաց կավելանան 24,5 միլիարդ ռուբլով և կկազմեն 188,2 միլիարդ ռուբլի։ Այդ միջոցները կհատկացվեն ժողովրդական կրթության, առողջապահության, պետական սոցիալական ապահովագրության գործի բարելավման և բազմազավակ ու միայնակ մայրերին տրվող նպաստների համար։*

*1957 թվականին բնակարանային շինարարության վրա ծախսվելու է 29,9 միլիարդ*



*ռուբլի, 1956 թվականի 25 միլիարդ ռուբլու փոխարեն։ Բացի դրանից, պետությունը 1,8 միլիարդ ռուբլու վարկ կտրամադրի բանվորներին ու ծառայողներին անհատական բնակարանային շինարարության համար։ Սովետական կառավարությունը համառորեն և հետևողականորեն անց է կացնում խաղաղության պահպանման և ամրապնդման քաղաքականություն. երկրի պաշտպանության համար հատկացումները այս տարի նախատեսվում են 96 միլիարդ 700 միլիոն ռուբլի գումարով, 1956 թվականի 102 միլիարդ 500 միլիոն ռուբլու դիմաց։ Պաշտպանության համար ծախսերի նվազեցումը նշանակում է, որ Սովետական Միությունը ոչ թե միայն խոսքով, այլ նաև գործնականում հոգ է տանում միջազգային լարվածության թուլացման մասին։*

*Հայկական ՍՍՌ Պետական բյուջեն սահմանված է 1 միլիարդ 642 միլիոն 300 հազար ռուբլի ընդհանուր գումարով։*

*Պետական բյուջեի հաջող կատարման կարևոր պայմաններից մեկը հանդիսանում է կառավարման ամբողջ ապարատի աշխատանքի բարելավումը, նրա հետագա կատարելագործումը։ Անհրաժեշտ է բարձրացնել տնտեսական բոլոր ցուցանիշները արդյունաբերական ձեռնարկությունների, կոլտն-*

տեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատանքում։ Այդ նպատակով հարկավոր է ամեն կերպ հասնել տեխնիկական պրոգրեսի արագացմանը, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը, արտադրանքի որակի բարելավմանը և ինքնարժեքի իջեցմանը։ Անհրաժեշտ է չըթուլացող պայքար կազմակերպել ամեն տեսակի շռայլումների ու վատնումների դեմ։ Պետք է ուժեղացնել հսկողությունը տնտեսական կազմակերպությունների գործունեության նկատմամբ, ապահովել բյուջեում նախատեսված միջոցների մոբիլիզացիան և ճիշտ օգտագործումը։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի կողմից հաստատված օրենքը Պետական բյուջեի մասին համապատասխանում է 1957 թվականի ժողովրդատնտեսական պլանին։ Նա համապատասխանում է մեր երկրի կենսական շահերին և միահամուռ հավանություն գտնում ամբողջ ժողովրդի կողմից։

---

## ՓԱՐԻԶԻ ԿՈՄՈՒՆԱՆ

Մարտի 18-ին լրանում է Փարիզի Կոմունայի 86-րդ տարեդարձը։

Պատմության մեջ առաջին անգամ, 1871 թվականի մարտի 18-ին Փարիզի ռևոլյուցիոն պրոլետարիատը ոտքի ելավ բուրժուական հասարակարգի դեմ և ստեղծեց իր իշխանությունը՝ պրոլետարիատի դիկտատուրան։ Կոմունան գոյություն ունեցավ ընդամենը 72 օր, բայց նա փառավոր էջեր գրեց մարդկության պատմության մեջ և ամբողջ աշխարհին ցույց տվեց պրոլետարիատի դասակարգային պայքարի ուժը։

1870 թվականի ֆրանս-պրուսական պատերազմը միանգամից երևան բերեց Նապոլեոն 3-րդի կայսրության փթածությունն ու անընդունակությունը։ Պատերազմ սկսելով Պրուսիայի դեմ, Նապոլեոն 3-րդը նպատակ ուներ խանգարել Գերմանիայի վերամիավորմանը, գրավել նրանից որոշ հողեր և այդպիսով վերականգնել իր խարխլված հեղինակությունը։ Այդ պատերազմը հրահրելու մեջ մեծ ակտիվություն էր հանդես բերում Գերմանիայի այն ժամանակվա կանց-

լեր Բիսմարկը, որը մեծ ակնկալություններ ուներ։ Պատերազմի առիթը հանդիսացավ Իսպանիայի թափուր մնացած գահի վրա նոր թագավոր նստեցնելու հարցը։

Ռազմաճակատում ֆրանսիական զորքերը անընդհատ պարտություններ էին կրում։ Առանձնապես ֆրանսիացիների համար ծանր եղավ Սեդանի մոտ կրած խոշոր պարտությունը և Մեց ամրոցում բանակներից մեկի շրջապատումը գերմանացիների կողմից։

Ֆրանսիական բանակի պարտության լուրը և Նապոլեոն 3-րդ կայսրի գերի հանձնվելը առաջ բերեց Փարիզի ռևոլյուցիոն բանվորների ու աշխատավորների բուռն զայրույթը. նրանք տապալեցին միապետությունը և հռչակեցին ռեսպուբլիկա։ Օգտվելով աշխատավորների թույլ կազմակերպվածությունից, իշխանության գլուխ անցան լիբերալ բուրժուաները։ Կազմվեց ժամանակավոր կառավարություն, որը կոչվեց «ազգային պաշտպանության կառավարություն», որի գլուխ կանգնեց միապետական գեներալ Տրոշյուն։ Սակայն դա փաստորեն ժողովրդին թշնամի կառավարություն էր։

Սեդանի կատաստրոֆից հետո գերմանական զորքերի առաջ բաց էր Փարիզի ճանապարհը։ Թշնամուն ետ մղելու համար ոտքի



ելան Փարիզի աշխատավորները։ Նրանց ճնշման տակ ժամանակավոր կառավարությունը ստիպված եղավ քաղաքում կազմակերպել 200 նոր գումարտակներ, որոնց շարքերն էին մտնում բանվորները, արհեստավորները, մանր ծառայողները։

Սեպտեմբերի 19-ին գերմանացիները պաշարեցին Փարիզը։ Ամենուրեք բնակչությունը կատաղի դիմադրություն էր ցույց տալիս։ Հայրենիքը պաշտպանելու և թշնամուն հակահարված տալու համար կազմակերպվում էին պարտիզանական ջոկատներ։

Մեծ հայրենասեր ու գրող Վիկտոր Հյուգոն այդ օրերին գրում էր՝ «Թող ամեն տուն զինվոր տա... Թող յուրաքանչյուր քաղաք բանակ դառնա... Թող գյուղացիները եղաններ վերցնեն... կռվենք գիշեր ու ցերեկ, պատերազմ լեռներում, պատերազմ հարթությունների վրա, պատերազմ անտառներում։ Ոտքի ելեք։ Մի թողեք, որ թշնամին շունչ առնի, հանգստանա, քնի... կատաղի մարտեր մղեք հայրենիքի համար»։

Փարիզի բուրժուազիան ավելի սարսափած զինված ժողովրդից, քան գերմանացիներից, ցանկանում էր առանց կռվի Փարիզը հանձնել գերմանացիներին։

Դեկտեմբերի 26-ին գերմանացիները

սկսեցին ռմբակոծել Փարիզը: Ժամանակավոր կառավարությունը շտապեց հաշտություն կնքել գերմանացիների հետ: Համաձայն պայմանագրի Գերմանիան Ֆրանսիայից ստանում էր հումքով հարուստ Էլզասն ու Լոթարինգիան և 5 միլիարդ մարկ ոսկով ռազմատուգանք:

Այդ ժամանակ տեղի ունեցան Ազգային ժողովի ընտրությունները, որի դեպուտատների մեծամասնությունը՝ 750-ից 450-ը միապետականներ էին: Ազգային ժողովը հրաժարվեց Ֆրանսիան ճանաչել որպես ռեսպուբլիկա: Ազգային ժողովի կողմից ընտրված կառավարության գլուխ կանգնեց կատաղի միապետական, ռեակցիոն Տյերը, բանվոր դասակարգի կատաղի թշնամին ու Կոմունայի դահիճը: «Գաճաճ հրեշ»— այդպիսի դիպուկ խոսքերով անվանեց նրան Մարքսը:

Փարիզում ռևոլյուցիոն խմորումները ուժեղանում էին: Փետրվարին մայրաքաղաքի զինված բանվորներն ու արհեստավորները ընտրեցին ազգային գվարդիայի կենտրոնական կոմիտե, որի կազմի մեջ մտան նաև I Ինտերնացիոնալի ֆրանսիական սեկցիայի մի շարք անդամներ՝ Է. Վարլենը, Ա. Ասսին, Ա. Առնոն և ուրիշներ:



1871 թվականի մարտի 17-ի լույս 18-ի գիշերը Տյերի հրամանով կառավարական զորքեր ուղարկվեցին Մոնմարտր և բանվորական մյուս թաղամասերը՝ գրավելու ազգային գվարդիայի թնդանոթները, որոնք ձեռք էին բերվել աշխատավորության միջոցներով: Սակայն եկած զինվորները եղբայրացան քաղաքի աշխատավորության հետ և միացան նրանց: Մարտի 18-ին ազգային գվարդիայի զորամասերը Փարիզում գրավեցին կառավարական բոլոր հիմնարկները: Քաղաքային խորհրդարանի և ռազմական մինիստրության շենքերի վրա սկսեցին ծածանվել կարմիր դրոշակները: Փարիզում իշխանությունը անցավ պրոլետարիատի ձեռքը: Դա աշխարհում առաջին պրոլետարական ռևոլյուցիան էր:

Մարտի 26-ին տեղի ունեցան Կոմունայի խորհրդի ընտրությունները: Խորհրդի անդամների մեծամասնությունը բանվորներ էին, իսկ մնացած մասը դեմոկրատական ինտելիգենցիայի ներկայացուցիչներ: Կոմունայում գոյություն ունեին «մեծամասնականների» և «փոքրամասնականների» խմբավորումներ, որոնք պայքարում էին միմյանց դեմ: Չկար մի միասնական պարտիա, որը

կարողանար կազմակերպել և առաջ մղել ամբողջ աշխատանքը։

Կոմունան հրատարակեց մի շարք դեկրետներ։ Առաջին հերթին ոչնչացվեց հին բանակը, որը փոխարինվեց ազգային գվարդիայով, վերացվեց հին ոստիկանությունը, քաղաքում կարգը սկսեցին պահպանել իրենք զինված բանվորները։ Եկեղեցին բաժանվեց պետությունից, Կոմունան իր ձեռքը վերցրեց ամուսնության, ծննդի և մահվան ակտերի արձանագրումը, վերացվեց կրոնի դասավանդումը դպրոցներում, պետական ծառայողների վարձատրությունը հավասարեցվեց բանվորների միջին աշխատավարձի չափին։ Իր հրատարակած օրենքները կենսագործելու համար Կոմունան ստեղծեց 10 հանձնաժողով՝ գործադիր, ռազմական, արտաքին հարաբերությունների, ֆինանսների, պարենային, հասարակական անվտանգության և այլն։

Հօգուտ աշխատավորների շահերի Կոմունան իրագործեց նաև մի շարք այլ միջոցառումներ։ Նա բռնագրավեց բոլոր այն ձեռնարկությունները, որոնց տերերը փախել էին Վերսալ և տվեց բանվորների տնօրինությանը, սահմանեց վերահսկողություն մյուս ձեռնարկությունների նկատմամբ, որոնց տե-



րերը մնացել էին քաղաքում։ Կոմունան օրենք հրատարակեց, որով ձեռնարկատերերին արգելվում էր բանվորներից տուգանք գանձել, չքավորներին վերադարձրեց լոմբարդներում գրավ դրած նրանց իրերը և այլն։ Փարիզի Կոմունան խորապես ինտերնացիոնալիստական էր, նրա թվում կային զգալի թվով տարբեր ազգերի ներկայացուցիչներ։

Օգտվելով Կոմունայի դանդաղաշարժությունից և անվճռականությունից, Վերսալ փախած Տյերի կառավարությունը հնարավորություն ունեցավ զորական խոշոր ուժեր հավաքագրել ռեվոլյուցիոն Փարիզի վրա հարձակվելու համար։ Դրանց միացավ նաև Բիսմարկի կողմից գերությունից ազատված 100 հազարանոց ֆրանսիական բանակը։ Ապրիլի կեսից Փարիզը ենթարկվեց վերսալցիների կատաղի գրոհին։

Մայիսի 21-ին վերսալցիներին հաջողվեց ներխուժել Փարիզ։ Սկսվեցին համառ, արյունահեղ կռիվները քաղաքի փողոցներում։ Կոմունարները քաջության ու անվեհերության փայլուն օրինակներ էին ցույց տալիս։ Փողոցները ծածկված էին բարիկադներով։ Կոմունարները առանձնապես համառ դիմադրություն էին ցույց տալիս բանվորական





թաղամասերում, որոնց հետ կողք-կողքի արիաբար մարտնչում էին նաև կանայք և նույնիսկ երեխաները։ 10 հազար բանվորուհիներ զենքը ձեռքներին կռվում և կապում էին վիրավորների վերքերը և ընկնում հերոսաբար։ Մի ամբողջ շաբաթ Փարիզը արիաբար պաշտպանվում էր։ Սակայն ուժերը խիստ անհավասար էին։ Փողոցներում հոսում էր պանծալի կոմունարների արյունը, քաղաքը ցնցվում էր հրանոթների որոտից։

Մայիսի 27-ին վերսալցիները գրավեցին Բելվիլ կոչվող բանվորական թաղամասը։ Կոմունարների մի մեծ ջոկատ համառ մարտեր էր մղում Պեր-Լաշեզ գերեզմանատանը։ Մայիսի 28-ին ընկավ վերջին բարիկադը։ Հակառևոլյուցիան հաղթեց։ Սկսվեց անխնա դատաստանը կոմունարների նկատմամբ։ Ամենից ավելի չտեսնված գազանություններ էր կատարում գեներալ Գալիֆեն։ Կոմունարները մեռնում էին հպարտ, գլուխները բարձր, բացագանչելով՝ «Կեցցե՛ Կոմունան»։ Գնդակահարվեցին 30 հազարից ավելի կոմունարներ, իսկ 40 հազար մարդ բանտերը նետվեցին և աքսորվեցին։

Այդ ժամանակ Փարիզի հերոսական պրոլետարիատին իրենց խորհուրդներով ու ցուցումներով անգնահատելի օգնություն էին



ցույց տալիս I Ինտերնացիոնալը և նրա գլուխ կանգնած Կարլ Մարքսը։

Փարիզի Կոմունան երկար գոյություն չունեցավ։ Նա աշխատեց ու պայքարեց միայն 72 օր։ Կոմունայի անկման պատճառներն այն էին, որ նախ՝ ֆրանսիական բանվոր դասակարգը դեռևս լիովին հասունացած չէր, չուներ իր սեփական մարքսիստական ռևոլյուցիոն պարտիան։ Նա ժամանակին չհարձակվեց Վերսալի վրա, որպեսզի լիկվիդացներ կոնտրռևոլյուցիայի այդ բույնը և, վերջապես, նա չկարողացավ դաշինք հաստատել գյուղացիության հետ։ Սակայն այն, ինչ արեց Կոմունան՝ հսկայական էր։ Նա խորը ազդեցություն թողեց միջազգային բանվորական շարժման վրա և կապիտալիզմի դեմ բանվոր դասակարգի կռվի ու հաղթանակի համար մեծ դաս հանդիսացավ։

Կոմունայի գործը անմահ է։ Այսօր աշխարհի, մեկ վեցերորդ մասում հաղթանակած սոցիալիզմի երկրի աշխատավորները, սոցիալիստական ամբողջ լագերի հետ միասին, շարունակում են անմահ Կոմունայի պանծալի գործը։ պայքարում են անդասակարգ սոցիալիստական հասարակարգի կառուցման և խաղաղությունն ամբողջ աշխարհում պահպանելու համար։

---

# ՈՐԱԿՅԱԼ ԿԱԴՐԵՐ ՄԵՐ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆԸ

Ա. ԲԱԲԱՅԱՆ

Դեռևս 1921 թվականին ՍՍՌՄ տերիտորիայում գտնվող խոշոր գործարանների, ֆաբրիկաների, հանքերի և ձեռնարկությունների արտադրական բազաների վրա կազմակերպվեցին առաջին ֆաբրիկա-գործարանային դպրոցները (ՖԶՈՒ), որոնք առաջին և երկրորդ հնգամյակների ընթացքում զգալի աշխատանք կատարեցին երիտասարդ մասնագիտական կադրերի պատրաստման և բանվոր դասակարգի շարքերի համալրման գործում։ Բավական է նշել, որ միայն առաջին հնգամյակի ընթացքում պատրաստվել և սոցիալիստական արդյունաբերության ճյուղերում աշխատանքի են անցել 350.000 երիտասարդ մասնագետ կադրեր, իսկ երկրորդ հնգամյակի ընթացքում՝ 1 միլիոն 400 հազար հոգի։

Սակայն ժողովրդական տնտեսության օրեցօրե զարգացող պահանջները չէր կարող բավարարել այս կամ այն կազմակեր-



ությունների կողմից մասնագիտական կադրերի պատրաստման և հավաքագրման գործը, քանի որ այսպիսի կադրերի պատրաստման եղանակը չէր բխում մեր բուռն թափով զարգացող արդյունաբերության շահերից և պահանջներից։ Ուստի անհրաժեշտություն էր զգացվում ժողովրդական տնտեսության պլանաչափ պահանջներից ելնելով, ստեղծել մասնագիտական կադրեր պատրաստելու միասնական սիստեմ, որը ունենա միասնական ուսուցման ծրագիր և այդ կադրերի պատրաստումը պլանավորված լինի արտադրության և երկրի հեռանկարային պահանջների համաձայն։ Այդ պատճառով էլ 1940 թվականի հոկտեմբերի 2-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության հատուկ Հրամանագրով ստեղծվեց աշխատանքային ռեզերվների սիստեմ։ Այդ սիստեմի մեջ մտան ֆաբրիկա-գործարանային ուսումնարանները, արհեստագործական և երկաթուղային դպրոցները, որոնց առաջ խնդիր էր դրված ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար պատրաստել բազմակողմանիորեն մասնագիտացված երիտասարդ կադրեր։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության 1940 թվականի հոկտեմբերի 2-ի Հրա-

մանագրի համաձայն, աշխատանքային ռեզերվների սիստեմ ստեղծվեց նաև Հայկական ՍՍՌ-ում։ Սկզբնական շրջանում ռեսպուբլիկայում գործում էին 5 արհեստագործական դպրոցներ, որտեղ սովորում էին 960 աշակերտներ և աշակերտուհիներ, 10 մասնագիտությունների գծով։

ՍՍՌՄ Աշխատանքային ռեզերվների սիստեմը, որը ստեղծվել է Հայրենական Մեծ պատերազմի նախօրյակին, մինչև այժմ մեր Հայրենիքի սոցիալիստական արդյունաբերության տարբեր բնագավառներին տվել է մի քանի միլիոն որակյալ մասնագետ բանվորներ, իսկ Հայկական ՍՍՌ Աշխատանքային ռեզերվների դպրոցները ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններին տվել են 29.210 մասնագետ կադրեր։ Միայն № 1 արհեստագործական դպրոցը, որը կառուցվել է Կիրովի անվան գործարանի արտադրական բազայի վրա, պատերազմի և հետպատերազմյան տարիների ընթացքում տվել է 4.562 մասնագետ՝ 12 մասնագիտությունների գծով։

Այժմ ռեսպուբլիկայում գործում է 12 արհեստագործական դպրոց, որտեղ սովորում են 2.557 աշակերտ և աշակերտուհիներ՝ 49 մասնագիտությունների գծով։



Հայկական ՍՍՌ աշխատանքային ռեզերվների սիստեմը իր գոյության 16 տարիների ընթացքում տվել է այնպիսի կադրեր, որոնց մասին պարծանքով են խոսում։ Այդպիսիների թվին է պատկանում Ա. Քալանթարյանը, որը ավարտել է Լենինականի երկաթուղային արհեստագործական ուսումնարանը և ներկայումս աշխատում է որպես մեքենավար։ Նա իր արտադրական առաջադրանքները կատարում է 150—180 տոկոսով։ Պ. Ալեքսանյանը, որն ավարտել է Երևանի Գյուղմեխանիզացիայի դպրոցը և ներկայումս աշխատում է Ախուրյանի շրջանի Ղարիբջանյանի ՄՏ կայանում որպես կոմբայնավար և իր արտադրական նորմաները միշտ կատարում է 300—350 տոկոսով։ Ալեքսանյանը «Ստալինեց—6» կոմբայնով 24 աշխատանքային օրում հավաքել է 7.188 ցենտներ հացահատիկ և 191 ցենտներ խոտաբույսերի սերմ, որի համար ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրով նրան շնորհվել է Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Օրինակելի աշխատանք է կատարել նաև Հոկտեմբերյանի գյուղմեխանիզացիայի դպրոցի նախկին սան Ա. Նիկողոսյանը, որն աշխատում է Թալինի ՄՏ կայանում՝

բրիգադիր-կոմբայնավար. նա «Ստալինեց—6» կոմբայնով 25 աշխատանքային օրում հնձել է 640 հեկտար տարածություն, պահեստ հանձնելով 11.102 ցենտներ հացահատիկ։ Կառավարությունը, բարձր գնահատելով ընկ. Նիկողոսյանի աշխատանքը, նրան ևս շնորհեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Ռեսպուբլիկայի աշխատավորությանը հանրածանոթ է ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս հանքափոր Ե. Գրիգորյանի անունը, որը Աշխատանքային ռեզերվների Ղափանի № 11 դպրոցի նախկին սաներից է։

Աշխատանքային ռեզերվների սիստեմի № 2 արհեստագործական ուսումնարանի նախկին սաներից է նաև ՍՍՌՄ և ամբողջ աշխարհի սպորտային հասարակությանը հանրածանոթ բռնցքամարտի գծով աշխարհի չեմպիոն, սպորտի վաստակավոր վարպետ Վլադիմիր Ենգիբարյանը։ Մեծ պարծանքով են խոսում աշխատանքային ռեզերվների սիստեմի նաև այն սաների մասին, որոնք ներկայումս աշխատում են արտադրության տարբեր բնագավառներում։ Այդպիսիների թվին են պատկանում Ա. Սիգարուկը, որը սովորել և ավարտել է Երև-



վանի հատուկ արհեստագործական ուսումնարանը 1954 թվականին և այժմ աշխատում՝ է Ավտոդետալ գործարանում որպես խառատ։ Նա իր օրական արտադրական պլանը կատարում է 180—200 տոկոսով։ Նույն դպրոցի նախկին սան Ժորա Հովհաննիսյանը, ավարտելով փականագործական բաժինը, աշխատում է Փոքր հիդրոտուրբինների գործարանում որպես տեխնիկական վերահսկողության բաժնի պետ։

Աշխատանքային ռեզերվների սիստեմի մեջ է գտնվում Երևանի № 6 շինարարական դպրոցը, որը բացվել է Երևանում 1946 թվականի հոկտեմբերին։ Այդ դպրոցը սկզբնական շրջանում պատրաստում էր մասնագետներ ռեսպուբլիկայի շինարարության համար, այն է՝ քարտաշ-որմնադիրներ, հյուսներ և ծեփագործներ 6 ամսվա դասընթացով։ Այնտեղ սովորում էին 17—18 տարեկան հասակ ունեցող պատանիներ։ Իսկ 1956—1957 ուսումնական տարում դպրոցում ուսման տևողությունը դարձել է 10 ամիս, որտեղ սովորում են 18—26 տարեկան հասակ ունեցող երիտասարդներ. ավելացել են նոր մասնագիտություններ, այն է՝ փականագործ-մոտորիստ, տեխմոնտաժիստ և այլն։ Ներկայումս դպրոցում

սովորում են 6 մասնագիտական խմբեր, թվով 130 հոգի, իրենց արտադրական-ուսուցման արհեստանոցներով և լրիվ կահավորումով։

Դպրոցը 1946—1956 թ. թ. ուսումնական տարիների ընթացքում ռեսպուբլիկայի շինարարությանը տվել է 1.825 շրջանավարտ տարբեր մասնագիտությունների գծով, որոնք այժմ աշխատում են շինարարության մեջ։

10 տարվա գործունեության ընթացքում դպրոց են ընդունվել 1.825 աշակերտ, որից 1.030-ը մանկատան երեխաներ, որոնք բոլորն էլ ավարտել են՝ ստանալով 4-րդ կարգի որակավորում։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Աշխատանքային ռեզերվների գլխավոր վարչությունը և ՀամԼԿԵՄ Կենտկոմը բազմիցս նշել են Երևանի № 6 շինարարական դպրոցի դրական աշխատանքը և պատվոգրերով պարգևատրել ինչպես դպրոցին, այնպես էլ աշխատող անձնակազմին։

Երեխաների ուսումնա-արտադրական պրոցեսների կազմակերպման և դաստիարակության ուղղությամբ առանձնապես աչքի ընկնող աշխատանք են կատարում վարպետներ Շամամյանը, Ավետիսյանը, Պո-



ղոսյանը և ուրիշներ։ Օրինակ, Երվանդ Շամամյանը, որը ծեփագործների խմբի ուսուցման վարպետ է, մինչև այժմ տվել է 230 շրջանավարտ, որոնք աշխատում են ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում և քաղաքի շինարարական օբյեկտներում։ Ամենագլխավորն այն է, որ Շամամյանի ղեկավարած սաները ավարտել են բարձր գնահատականներով, բացի դրանից, վարպետ Շամամյանը սերտ նամակագրական կապեր է պահպանում իր աշակերտների ծնողների հետ։ Բավական է ասել, որ միայն 1955—56 ուսումնական տարում նա գրել է 90 նամակ և հանդիպում է ունեցել իր սաներից շատերի ծնողների հետ։ Շամամյանը իր լավագույն աշխատանքի համար Աշխատանքային ռեզերվների վարչության կողմից 3 անգամ պարգևատրվել է պատվոգրով, իսկ դպրոցի դիրեկցիայի կողմից բազմիցս ստացել է շնորհակալություն և դրամական պարգև։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԼԱԳԵՐԻ ԵՐԿՐՆԵՐԻ ԱՄՐԱՊՆԴՎՈՂ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆԸ

Ե. ԿՈՒՍԿՈՎ

*Սոցիալիստական երկրների փոխհարաբերություններում ուղեցույց աստղ են ծառայում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարները։*

*«...Աշխատանքի շահերը,— սովորեցնում էր Վ. Ի. Լենինը,— պահանջում են տարբեր երկրների, տարբեր ազգերի աշխատավորների միջև ամենալրիվ վստահություն, ամենասերտ դաշինք։ Կալվածատերերի և կապիտալիստների, բուրժուազիայի կողմնակիցները ջանում են անջատել բանվորներին, ուժեղացնել ազգային պառակտումը և թշնամությունը, որպեսզի թուլացնեն բանվորներին, որպեսզի ամրացնեն կապիտալի իշխանությունը։*

*Կապիտալը միջազգային ուժ է։ Նրան հաղթելու համար հարկավոր է բանվորների միջազգային միություն, նրանց միջազգային եղբայրություն։*



*Մենք ազգային թշնամության, ազգային պառակտման, ազգային առանձնացվածության հակառակորդներ ենք։ Մենք միջազգայնականներ, ինտերնացիոնալիստներ ենք» (Երկեր, հատոր 30, էջ 367)։*

*Սոցիալիստական լագերը հանդիսանում է լենինյան այդ մեծ գաղափարների կենդանի մարմնացումը։ Սոցիալիստական երկրների միջև հաստատված հարաբերությունները՝ դա նոր տիպի միջազգային հարաբերություններ են, եղբայրական բարեկամության և փոխադարձ օգնության հարաբերություններ։*

*Վերջին ամիսներում սոցիալիստական լագերը նորից համոզիչ կերպով ցուցադրեց իր անխորտակելի միասնությունը, իր համախմբվածությունը պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրոշի ներքո։*

*1956 թվականի նոյեմբեր-դեկտեմբերին Մոսկվայում եղբայրական, բարեկամական բանակցություններ տեղի ունեցան ՍՄԿԿ Կենտկոմի և Սովետական Միության կառավարության պատգամավորության և Լեհական Միացյալ Բանվորական պարտիայի ու Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարության պատգամավորության միջև, ինչպես նաև Սովետական Միության և*

Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարական պատգամավորությունների միջև։ 1957 թվականի հունվար-փետրվարին Մոսկվայում եղբայրական բարեկամական մթնոլորտում կայացան երկկողմանի բանակցություններ Սովետական Միության կառավարական պատգամավորության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի, Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի, Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկայի կառավարական պատգամավորությունների միջև։ Այդ բոլոր բանակցությունները և դրանց ավարտումից հետո հրապարակված փաստաթղթերը մեկ անգամ ևս ակնառու կերպով ցույց տվեցին, որ սոցիալիստական երկրների միջև բարեկամությունը դիմացավ բոլոր փորձություններին և բարձրացավ մի նոր, ավելի բարձր աստիճան։ Համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորումը և ամրապնդումը՝ դա մի բարդ պատմական պրոցես է։ Հասարակական հարաբերությունների խորը ռևոլյուցիոն վերափոխումների ընթացքում սոցիալիզմի երկրներում, իհարկե, թույլ տրվեցին նաև սխալներ, այդ թվում նաև սոցիալիստական պետությունների



փոխհարաբերություններում։ Բայց սոցիալիստական երկրների միջև չեն եղել և չեն կարող լինել արմատական հակասություններ։ Իսկ ինչ վերաբերվում է սխալներին, ապա դրանք չէին կարող սոցիալիստական պետությունների հարաբերություններում խախտել գլխավորը, վճռականը՝ նրանց եղբայրական միասնությունը և բարեկամությունը։

Պրոլետարական ինտերնացիոնալիզմի ուղով Լենինի կողմից դաստիարակված Սովետական Միության Կոմունիստական պարտիան վճռականորեն դատապարտեց և ուղղեց անցյալում թույլ տրված սխալները և ուղի հարթեց սոցիալիստական պետությունների միասնության հետագա ամրապնդման համար։ Այդ գործում խոշոր դեր խաղացին ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, ինչպես նաև ՍՍՌՄ կառավարության 1956 թվականի հոկտեմբերի 30-ի Դեկլարացիան Սովետական Միության և մյուս սոցիալիստական պետությունների միջև բարեկամության և համագործակցության զարգացման ու հետագա ամրապնդման հիմունքների մասին։

Սոցիալիստական երկրների սերտ միասնության անհրաժեշտությունը թելադրվում է

ոչ թե ինչ-որ անցողիկ մոտիվներով, այլ նոր հասարակության կառուցման, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար համատեղ պայքարի խորը, արմատական շահերով։

Սոցիալիստական երկրների միասնությունը առաջնակարգ նշանակություն ունի նրանց ազատության և ազգային անկախության պաշտպանման համար։ Քանի դեռ սոցիալիստական լագերը համախմբված է, նրա մեջ մտնող ինչպես մեծ, այնպես էլ ամենափոքր երկիրը անպարտելի է։

Դա լավ են հասկանում ոչ միայն մեր բարեկամները, այլև թշնամիները։ Միջազգային ռեակցիան փորձում է բոլոր միջոցներով քայքայել սոցիալիստական լագերի միասնությունը, թուլացնել ժողովուրդների գիտակցությունը նացիոնալիզմի ու շովինիզմի թունավոր գաղափարախոսությամբ։ Այժմ ռեակցիայի գաղափարախոսները բացահայտորեն հայտարարում են, որ իմպերիալիստական ուժերի բոլոր ջանքերը պետք է ուղղվեն «կոմունիստական աշխարհի բնույթի փոփոխմանը», համաշխարհային սոցիալիստական սիստեմի քայքայմանն ու ոչնչացմանը։ Այդ նպատակին հասնելու համար միջազգային ռեակցիան դիմում է ամենածայրահեղ միջոցների։ Դա ամբողջ



ուժով հաստատեց հակառևոլյուցիոն խռովությունը Հունգարիայում, որը կազմակերպվեց Արևմուտքի իմպերիալիստական շրջանների կողմից։ Խռովության ոգեշնչողները ցանկանում էին ճեղքվածք առաջացնել սոցիալիստական լագերում, սոցիալիստական երկրներն իրարից բաժանել այն հաշվով, որպեսզի նրանց խփեին առանձին-առանձին։

Կործանիչ պարտություն կրելով Հունգարիայում, իմպերիալիստները չեն հրաժարվել իրենց հանցագործ մտադրություններից։ Ինչպես վկայում են փաստերը, նրանք ուժեղացնում են իրենց քայքայիչ գործունեությունը սոցիալիստական երկրների դեմ։

Սոցիալիստական լագերի միասնության մեջ է կայանում յուրաքանչյուր առանձին սոցիալիստական երկրի ուժի, անպարտելիության և անվտանգության երաշխիքը։ Սոցիալիստական լագերի երկրները միմյանց հետ կապված են ագրեսիայի դեմ պաշտպանության փոխադարձ պարտավորություններով։ Եվ սոցիալիստական երկրների դեմ ուղղված իմպերիալիստական ուժերի ամեն մի ագրեսիվ գործողություն կհանդիպի 900 միլիոնանոց սոցիալիստական լագերի վճռական հակահարվածին։

Սոցիալիստական լագերի երկրների ժողովուրդները դժվար պահին միշտ օգնություն են հասնում միմյանց: Այսպես, օրինակ, ներկայումս ՍՍՌՄ-ը և ժողովրդադեմոկրատական երկրները եղբայրաբար օգնում են Հունգարիային բուժելու նրա էկոնոմիկային հակառևոլյուցիոն խռովության կողմից հասցված վերքերը: Դրանում ցայտուն կերպով դրսևորվում է պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգին, որը համախմբում է սոցիալիստական լագերը:

Արդյունաբերական տեսակետից զարգացած սոցիալիստական երկրները ակտիվ կերպով օժանդակում են նախկինում հետամնաց երկրներին: Սովետական, լեհական, չեխական մասնագետները օգնում են իրենց չին եղբայրներին կադրեր պատրաստելու ՉԺՌ-ում ստեղծվող հզոր ինդուստրիայի համար: Սովետական Միությունը Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկային օգնություն է ցույց տալիս 211 խոշոր արդյունաբերական օբյեկտների շինարարության գործում: Իր հերթին ժողովրդական Չինաստանը օգնում է Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկայի էկոնոմիկայի զարգացմանը: Եղբայրա-



կան համագործակցության մեջ այսպես է ամրապնդվում յուրաքանչյուր սոցիալիստական երկրի և ամբողջ սոցիալիստական լագերի տնտեսական հզորությունը: Միաժամանակ էլ ավելի է ընդլայնվում սոցիալիստական երկրների կուլտուրական համագործակցությունը, որը նրանց օգնում է ամրապնդելու եղբայրական բարեկամության կապերը:

Սոցիալիստական երկրների ղեկավար և ուղղություն ցույց տվող ուժը հանդիսանում են փորձված կոմունիստական և բանվորական պարտիաները: Բարեկամությունը և միասնությունը նրանց միջև՝ դա սոցիալիզմի ուղին բռնած ժողովուրդների եղբայրական համագործակցության հուսալի երաշխիքն է:

Մարքսիստական-լենինյան պարտիաները բացառիկ կարևոր նշանակություն են տալիս սոցիալիստական շինարարության փորձի փոխադարձ ուսումնասիրմանը, և ամենից առաջ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի փորձի ուսումնասիրմանը, որը առաջինը իր երկրի ժողովուրդներին հասցրեց սոցիալիզմին, իսկ այժմ հաջողությամբ առաջնորդում է նրան դեպի կոմունիզմ:

Լիովին հասկանալի է, որ յուրաքանչյուր ժողովրդի մոտ կան սոցիալիզմի համար պայքարի իր առանձնահատկությունները, որոնք բխում են ազգային և պատմական պայմաններից: Վ. Ի. Լենինը պահանջում էր դա հաշվի առնել նույնիսկ մի երկրի՝ ՍՍՌՄ-ի շրջանակներում: Լենինյան այդ ցուցումը վերաբերվում է նաև տարբեր պետություններին: Չինաստանի կոմունիստական պարտիան, մյուս ժողովրդական դեմոկրատիայի երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները ստեղծագործաբար կիրառում են մարքսիզմ-լենինիզմը, խնամքով հաշվի են առնում իրենց երկրների առանձնահատկությունները:

Սակայն այդ առանձնահատկությունները չեն կարող փոփոխել սոցիալիստական ռևոլյուցիայի հիմնական օրինաչափությունները, այն անվիճելի ճշմարտությունը, որ սոցիալիզմին հասնելու հիմնական և գլխավոր ուղիները բոլորի համար հանդիսանում են ընդհանուր:

Բանվոր դասակարգի թշնամիները դիմում են ամենանենգ միջոցների, որպեսզի գժտություն առաջացնեն կոմունիստական և բանվորական շարժման մեջ, նրան զրկեն հուսալի կողմնացույցից՝ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքից: Առանձնապես վնասա-



կար է բուրժուական մամուլի կողմից ռեկլամի ենթարկվող այսպես կոչված «ազգային կոմունիզմի» գաղափարը: Նրա պրոպագանդիստները այն, ինչ տվել է հաղթական Հոկտեմբերյան ռևոլյուցիան, որպես կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու ընդհանուր օրենք, հակադրում են տարբեր երկրներում սոցիալիզմի կառուցման ազգային առանձնահատկություններին: Հասկանալի է, որ այսպես կոչված «ազգային կոմունիզմը» տանում է ոչ թե սոցիալիստական երկրների միավորմանը, այլ նրանց բաժանմանը:

Այս կամ այն երկրում սոցիալիզմին անցնելու ազգային առանձնահատկությունների, «հատուկ ուղիների» չափից ավելի ուռցնելը վնաս է հասցնում սոցիալիստական երկրների ամբողջ համագործակցությանը:

Այժմ, երբ ուժեղացել են սոցիալիզմի թշնամիների մեքենայությունները, առանձնապես կարևոր է զգոնությունը բարձրացնելը, բանվոր դասակարգի և նրա ավանգարդի՝ կոմունիստական և բանվորական պարտիաների միասնության հիմունքները քայքայելու բոլոր փորձերին վճռական հակահարված հասցնելը:

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*(Թվեր ու փաստեր)*

*Անշեղորեն կենսագործելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 6-րդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՄԿԿ XX համագումարի Դիրեկտիվները, Սովետական Միության աշխատավորները վերջին մեկ տարվա ընթացքում խոշոր հաջողությունններ են ձեռք բերել արդյունաբերության, գյուղատնտեսության զարգացման, ժողովրդի նյութական բարեկեցության ու կուլտուրական մակարդակի բարձրացման ուղղությամբ։*

*Ստորև տպագրում ենք մի շարք թվեր ու փաստեր այդ հաջողությունների մասին։*

☆ *1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, ՍՍՌՄ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է մոտ 11 տոկոսով։ Ըստ առանձին ճյուղերի արդյունաբերական արտադրությունն ավելացել է՝ արտադրության միջոցների արտադրության գծով 11,4 տոկոսով, իսկ սպառման միջոցների արտադրության գծով 9,4 տոկոսով։*

☆ *1956 թվականին գերակատարված է նավթի, գազի, կոքսացող ածխի, թերթաքարերի հանույթի, պողպատե խողովակների, բենզինի, նիկելի, մոլիբդենի կոնցենտրատների, բեռնատար ավտոմոբիլների, դիզելների, գազագեներատորային շարժիչների, մագիստրալային ջերմաքարշերի, բեռնատար ու մարդատար մագիստրալային վագոնների, տրակտորային ցանիչների և կուլտիվատորների, տրակտորային սկրեպերների, ստանդարտ տների, աբեստի և արտադրանքի այլ տեսակների արտադրության պլանը։*



☆ *Գնալով էլ ավելի են ընդլայնվում միութենական ռեսպուբլիկաների իրավունքները։ Այդ երևում է այն փաստից, որ վերջին երեք տարիների ընթացքում մոտ 15 հազար ձեռնարկություն միութենական ենթակայությունից հանձնվել է ռեսպուբլիկաների տնօրինությանը։ Դրա հետևանքով միութենական ռեսպուբլիկաների ենթակայության տակ գտնվող արդյունաբերության համախառն արտադրանքի տեսակարար կշիռը արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալի մեջ 1955 թվականին կազմեց 55 տոկոս, 1953 թվականի 31 տոկոսի փոխարեն։*

☆ *Արդյունաբերության արտադրանքի հիմնական տեսակների արտադրանքը 1956 թվականին 1955 թվականի համեմատությամբ, զգալիորեն աճել է։ Բացարձակ թվերով 1956 թվականին արտադրվել է՝ չուգուն՝ 35,8 միլիոն տոննա, պողպատ՝ 48,6 միլիոն տոննա, գլանվածք՝ 37,8 միլիոն տոննա, երկաթե հանքաքար՝ 78 միլիոն տոննա, ածուխ՝ 83 միլիոն տոննա, նավթ՝ 83,8 միլիոն տոննա, էլեկտրաէներգիա՝ 192 միլիարդ*

կիլովատ-ժամ, ավտոմոբիլներ՝ 465 հազար հատ, այդ թվում մարդատար՝ 98 հազար հատ և ավտոբուսներ՝ 9 հազար հատ, տրակտորներ՝ 124 հազար հատ, հացահատիկային կոմբայններ՝ 82 հազար հատ, ցեմենտ՝ 24,9 միլիոն տոննա, բամբակե գործվածքներ՝ 5,5 միլիարդ մետր, բրդե գործվածքներ՝ 268 միլիոն մետր, մետաքսե գործվածքներ՝ 754 միլիոն մետր, գուլպեղեն՝ 804 միլիոն զույգ, կոշիկ՝ 314 միլիոն զույգ, ռադիոընդունիչներ և հեռուստացույցեր՝ 4,3 միլիոն հատ, միս՝ 2.368 հազար տոննա, ձուկ՝ 2.788 հազար տոննա, կենդանական յուղ, պանիր և այլ կաթնամթերք՝ 17,3 միլիոն տոննա, շաքարավազ՝ 4.354 հազար տոննա, պահածոներ՝ 3,6 միլիարդ պայմանական տուփ, օճառ՝ 1,3 միլիոն տոննա, և այլն։

☆ 1956 թվականի ընթացքում արդյունաբերությունը յուրացրեց մեքենաների, սարքավորումների, գործիքների և նյութերի ավելի քան 250 նոր տեսակների սերիական արտադրությունը։

☆ Մեծ աշխատանք է կատարվել ատոմային էներգիան խաղաղ նպատակներով օգտագործելու բնագավառում։ Ատոմային էներգիան այժմ օգտագործվում է, օրինակ, հալոցային պրոցեսի հետազոտման, պողպատի արտադրության մեջ, էլեկտրոլիզի ժամանակ ալյումինի քանակը պարզելիս, տեխնոլոգիական պրոցեսների վերահսկման ու ինտենսիվացման ժամանակ, սառը և տաք



գլանման պրոցեսում սև ու գունավոր մետաղների հաստությունը որոշելիս, ինչպես նաև բժշկության մեջ։

☆ 1956 թվականին գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները կազմեցին մոտ 195 միլիոն հեկտար և 1955 թվականի համեմատությամբ ավելացան 8,9 միլիոն հեկտարով, իսկ 1953 թվականի համեմատությամբ՝ համարյա 38 միլիոն հեկտարով։ Վերջին երեք տարում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածություններն ավելացան մոտ 22 միլիոն հեկտարով, այդ թվում ցորենինը՝ 14 միլիոն հեկտարով, տեխնիկական կուլտուրաներինը՝ 677 հազար հեկտարով՝ շաքարի ճակնդեղինը՝ 439 հազար հեկտարով, բամբակենունը՝ 190 հազար հեկտարով և այլն։

☆ Անցյալ տարվա ընթացքում ավելացել է մթերատու անասունների բոլոր տեսակների գլխաքանակը։ Կոլտնտեսություններում, սովխոզներում, կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների մոտ եղած անասունների ընդհանուր գլխաքանակը մինչև 1956 թվականի հոկտեմբերի 1-ը կազմում էր՝ խոշոր եղջերավոր անասուններ՝ 70,4 միլիոն գլուխ, այդ թվում կովեր՝ 30,9 միլիոն գլուխ, խոզեր՝ 56,4 միլիոն գլուխ և ոչխարներ՝ 129,8 միլիոն գլուխ։

☆ Մինչև 1957 թվականի հունվարի 1-ը երկրում մթերված է 3 միլիարդ 304 միլիոն փութ հացահատիկ, որը մեկ միլիարդ փթով ավելի է, քան ամենաբերքառատ տարիներին։

☆ 1956 թվականին ՍՍՌՄ-ի գյուղատնտեսությունն

ստացավ 248 հազար տրակտոր, 114 հազար բեռնատար ավտոմոբիլ, եգիպտացորենի և սիլոսային կուլտուրաների բերք հավաքող 41 հազար կոմբայն, 6,5 հազար կարտոֆիլահավաք կոմբայն, 122 հազար տրակտորային գութան, 148 հազար տրակտորային կուլտիվատոր և բազմաթիվ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։

☆ 1956 թվականին պետական և կոոպերատիվ (բացի կոլտնտեսություններից) կազմակերպությունների կապիտալ ներդրումների ծավալը կազմեց 186 միլիարդ ռուբլի և 1955 թվականի կապիտալ ներդրումները գերազանցեց 17 տոկոսով։ 1956 թվականին գործարկվեց ավելի քան 800 պետական արդյունաբերական նոր խոշոր ձեռնարկություն։

☆ Գերակատարվեց հիդրոէլեկտրակայաններում կարողությունների գործարկման պլանը։ Կույբիշևի հիդրոէլեկտրակայանում 1956 թվականին շարք մտան 11 ագրեգատ։ Շարք մտավ Կույբիշև—Մոսկվա էլեկտրահաղորդման բարձրավոլտ գիծը։ Կամայի հիդրոէլեկտրակայանում 1956 թվականին գործարկվեց 12 տուրբին։ Գործարկվեցին Իրկուտսկի հիդրոէլեկտրակայանի առաջին ագրեգատները, Կայրակ-կումի հիդրոէլեկտրակայանը Տաջիկական ՍՍՌ-ում, Խիշրաուի հիդրոէլեկտրակայանը Ուզբեկական ՍՍՌ-ում, Տկիբուլու և Գումաթի հիդրոէլեկտրակայանները Վրացական ՍՍՌ-ում, Արզնիի հիդրոէլեկտրակայանը Հայաստանում և այլն։



ժամկետից մեկ տարի շուտ շարք մտավ Ստավրապոլ—Մոսկվա 1,3 հազար կիլոմետր երկարությամբ գազամուղի առաջին հերթը։

★ 1956 թվականին ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության մեջ բանվորների և ծառայողների թիվը կազմեց 50 միլիոն մարդ և 1955 թվականից ավել էր 2,1 միլիոնով։

☆ 1955 թվականի համեմատությամբ ՍՍՌՄ-ը ազգային եկամուտը աճեց 12 տոկոսով։

Բանվորների և ծառայողների միջին աշխատավարձը 1955 թվականի համեմատությամբ ավելացավ 3 տոկոսով, իսկ բանվորների և ծառայողների կենսաթոշակներն ու նպաստները ավելացան 12 տոկոսով։

1956 թվականի հոկտեմբերի 1-ից ավելացվեցին համարյա 15 միլիոն մարդկանց պետական կենսաթոշակները։

☆ ՍՍՌՄ-ում սովորողների թիվը, ներառյալ ուսման բոլոր տեսակները, անցյալ տարի կազմեց մոտավորապես 50 միլիոն մարդ։ Բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում են 2 միլիոն մարդ։ Բարձրագույն և միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները տվեցին ավելի քան 760 հազար երիտասարդ մասնագետ կամ 1955 թվականից 126 հազարով ավելի։

☆ Մեկ տարում գիտական աշխատողների թիվը աճեց ավելի քան 15 հազարով և 1956 թվականի վերջերին կազմեց 239 հազար մարդ։ Գիտաշխատող-

ներից ավելի քան 95 հազար մարդ ունեն գիտությունների դոկտորի կամ թեկնածուի գիտական աստիճան։

☆ Ներկայումս մեր երկրում կա բոլոր տեսակի ավելի քան 400 հազար գրադարան, որոնք ունեն մոտ 1,5 միլիարդ գիրք։ Անցյալ տարի հրատարակված գրքերի տիրաժը կազմեց 1,1 միլիարդ օրինակ, կինոսարքերի քանակը 1955 թվականի 59 հազարի դիմաց կազմեց 63 հազար։

☆ Հիվանդանոցային հիմնարկներում մահճակալների թիվը 1955 թվականի համեմատությամբ աճեց ավելի քան 64 հազարով, մշտական մսուրների տեղերի թիվը՝ ավելի քանի 50 հազարով։ Բժիշկների թիվըն ավելացավ համարյա 14 հազարով։

☆ 1956 թվականին պետական ու կոոպերատիվ կազմակերպությունները, ինչպես նաև քաղաքային բնակչությունն իր հաշվին և պետական վարկով կառուցեց 36 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ Բացի դրանից, գյուղական վայրերում կոլտնտեսականներն ու գյուղական ինտելիգենցիան անցյալ տարի կառուցեցին մոտավորապես 700 հազար բնակելի տուն։

---

# ՄՈՆՂՈԼԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

Մոնղոլիայի աշխատավորները խոշոր հաջողությունների են հասել ժողովրդական իշխանության տարիներին։ Ահա այդ են հաստատում հետևյալ թվերն ու փաստերը։

★ Ռեսպուբլիկայում ժողովրդական իշխանության տարիներին անասունների գլխաքանակը ավելացել է 2,5 անգամ։ Ներկայումս Մոնղոլիայում բնակչության յուրաքանչյուր անձին ավելի շատ անասուն է ընկնում, քան աշխարհի որևէ այլ երկրում։

★ Մոնղոլիայում միայն առաջին հնգամյակի տարիներին ցանքատարածությունը ավելացել է 72 տոկոսով։

★ Ռեսպուբլիկայում գյուղացիության մեծամասնությունը միավորվել է կոլեկտիվ, խոշոր տնտեսությունների մեջ։ Խոշորացված տնտեսությունները մեքենայացվում և ֆինանսավորվում են պետության կողմից։ 1956 թվականին, 1955 թվականի համեմատությամբ, գյուղատնտեսական արտադրա-

կան միավորումները աճել են ավելի քան երկու անգամ։

★ Նշանակալի չափով աճել է անասնաբուծության մթերատվությունը։ Առաջին և երկրորդ հնգամյակներում բրդի արտադրությունն ավելացել է 20 տոկոսով, իսկ կաթինը՝ 15 տոկոսով։ Անշեղորեն աճում են գյուղատնտեսական միավորումներում ընդգրկված տնտեսությունների եկամուտները։

★ Ժամանակակից Մոնղոլիայի էկոնոմիկայում նշանակալից դեր են կատարում պետական խոշոր տնտեսությունները, որտեղ գլխավորապես զբաղվում են անասնապահությամբ։

★ Սկսած 1930 թվականից, արագ կերպով զարգանում է Մոնղոլիայի հայրենական արդյունաբերությունը։ 1934 թվականին Սովետական Միության օգնությամբ Ուլան-Բատորում կառուցվել և շահագործման է հանձնվել արդյունաբերական մի խոշոր կոմբինատ։ Վերջին տարիներում կառուցվել են բուրդ լվացող ֆաբրիկա, մեխանիկական գործարան, փայտամշակման և շինարարական ձեռնարկություններ։ Բուռն թափով զարգանում է նաև լեռնային արդյունաբերությունը։

★ 1955 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերության համախառն արտադրան-



քը, 1940 թվականի համեմատությամբ, աճել է 3,6 անգամ։ 1955 թվականին ավտոմոբիլային պարկը, 1947 թվականի համեմատությամբ, աճել է ավելի քան երկու անգամ, իսկ բեռնաշրջանառությունը՝ 3,6 անգամ։

★ Աճել է Մոնղոլիայի ժողովրդական տնտեսության արտադրանքի արտահանումը։ 1955 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, այն բարձրացել է գրեթե 45 տոկոսով։

★ Մոնղոլ ժողովուրդը լուրջ հաջողություններ է ձեռք բերել կուլտուրայի զարգացման բնագավառում։ Նախառևոլյուցիոն Մոնղոլիան ուներ ընդամենը մեկ աշխարհիկ դպրոց՝ 50 աշակերտներով, բայց դրա փոխարեն երկրում կար 747 վանք։ Բնակչության յուրաքանչյուր 11 հազար հոգուն տարրական դպրոցում ընկնում էր մեկ տեղ, իսկ 700 հոգուն հասնում էր մեկ եկեղեցի։ Այսպիսով մոնղոլ ժողովուրդը չգիտեր, թե ինչ բան է դպրոցը, թատրոնը, ակումբը և գրադարանը։ Երկրում համատարած անգրագիտություն էր տիրում։

★ Այժմ Մոնղոլական Ժողովրդական ռեսպուբլիկան ունի 349 տարրական, 56 յոթնամյա, 31 միջնակարգ դպրոց, 16 տեխնիկում և 4 բարձրագույն ուսումնական հաստատություն։ Առաջին բարձրագույն ու-

ումնական հաստատությունը՝ Մոնղոլիայի համալսարանը, բացվել է երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին։ Համալսարանում սովորում է երկու հազար ուսանող, որն ունի 32 ամբիոն, որտեղ պատրաստում են անասնաբույժ-անասնաբուժներ, բժիշկներ, տնտեսագետներ և ուրիշ շատ մասնագետներ։

★ Կուլտուրայի և լուսավորության բնագավառում ձեռք բերած խոշոր հաջողությունները ՄԺՌ-ում նպաստավոր պայմաններ են ստեղծել անցնելու ընդհանուր պարտադիր ուսուցման կիրառմանը, գյուղում տարրական, իսկ քաղաքում 7-ամյակի սահմաններում։

★ Երեխաների գաղափարական-քաղաքական դաստիարակության գործում խոշոր դեր է կատարում պիոներական կազմակերպությունը։ Առաջին պիոներական կազմակերպությունը Մոնղոլիայում ստեղծվել է 1925 թվականի մայիսի 28-ին Ուլան-Բատորի № 3 տարրական դպրոցում։ Ներկայումս Մոնղոլիայի պիոներական կազմակերպությունն իր մեջ միավորում է մոտ 40 հազար դպրոցական։

★ Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայում լույս է տեսնում 26 անուն թերթ



և 17 անուն ամսագիր։ Պոլիգրաֆարդյունաբերությունը մեկ տարում տալիս է ավելի քան 74 միլիոն տպագրական օտիսկ։

★ Իր գոյության տարիներին գրքի պալատը և գիտկոմիտեն հրատարակել են ավելի քան 300 գիտական և գիտա-պոպուլյար աշխատություններ, իսկ պետհրատը՝ քաղաքական և գեղարվեստական բազմաթիվ գրքեր։

---

## СОДЕРЖАНИЕ



Խմբագիր՝ Վ. ԲԶՆՈՒՆԻ

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՍԻԱՄԱՆԹՈ (Ատոմ Յարճանյան) — *«Ընտիր երկեր»։ Գինը 6 ռ., 252 էջ, տիրաժ 15.000։*

ԳՈՒՐԳԵՆ ՄԱՀԱՐԻ — *«Երիտասարդության շեմին»։ Գինը 10 ռ. 45 կ., 608 էջ, տիրաժ 10.000։*

Գ. ՎԱՀԱՆՅԱՆ — *«Հայոց լեզվի ոճաբանության ձեռնարկ»։ Գինը 2 ռ. 80 կ., 208 էջ, տիրաժ 3.000։*

Ռ. ՇԻՇՄԱՆՅԱՆ — *«Էդգար Շահին»։ Կյանքն ու ըստեղծագործությունը։ Գինը 6 ռ. 30 կ., 208 էջ, տիրաժ 3.000։*

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 5** **1957 г.**

*ՎՖ 01647 Պատվեր 228 Տիրաժ 8.360*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*
*Գինը 50 կոպ.*